# CLASSICAL ARMENIAN BIBLE: THE ZOHRAB BIBLE

Edited by Dr H. Zohrabian



## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ
## ՄԱՏԵԱՆ ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԱՑ

ԸՍՏ
ՃՇԳՐԻՏ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ
ՆԱԽՆԵԱՑ ՄԵՐՈՑ
'Ի ՀԵԼԼԵՆԱԿԱՆՆ ՀԱՒԱՏԱՐՄԱԳՈՅՆ ԲՆԱԳՐԷ
'Ի ՀԱՅԿԱԿԱՆՍ ԲԱՐԲԱՌ։

*Նորոգապէս 'ի լոյս ընծայեալ*
*յընտրելագոյն գրչագիր գաղափարէ՝*
*Համեմատութեամբ այլևայլ օրինակաց,*
*Հանդերձ կարևոր ծանօթութեամբք բնաբանին։*

Յաշխատասիրութենէ տեառն
Հ. Յովհաննու Զօհրապեան Վարդապետի,
'ի միաբանութենէ Մեծին Մխիթարայ
Րաբունապետի և առաջին Աբբայի։



*Տպագրեալ Հրամանաւ Տ.Տ. Ստեփաննոսի Ագոնց*
*Աստուածապատիւ Արհիեպիսկոպոսի,*
*և Առաջնորդի Ուխտին՝ Սրբոյն Ղազարու։*

## THE BIBLE
## OLD AND NEW TESTAMENTS

ACCORDING
TO THE ACCURATE TRANSLATION
OF OUR ANCESTORS
FROM THE MOST RELIABLE GREEK TEXT
INTO THE ARMENIAN LANGUAGE.

Newly published from the best manuscript,
with a comparison of various exemplars,
with important annotations to the text.

*On the basis of the work of*
*Rev. Doctor Fr. Hovhann Zohrabian,*
*of the Congregation of the Great Mechitar,*
*Pontif and first Abbot.*



Published by order of the Very Rev. Stepannosi Agonts,
Honoured Venerable Bishop
and Prelate of the Congregation of St. Lazarus.

Revised edition edited by Tigran A. Aivazian (Erevan, 2016)





1805 'Ի ՎԵՆԵՏԻԿ. ՌՄԾԴ
'Ի Գործարանի Սրբոյն Ղազարու։

1805 VENICE
At the Press of St. Lazarus.

*բռնադատէր թագաւորն 'ի նախարարացն Հաստատել Հրա-
ման, զի եթէ իշխեսցէ ոք խնդրել խնդրուածս յԱստուծոյ կամ
'ի մարդոյ, բա՛ց միայն յարքայէ մինչև ցերեսուն օր՝ անկցի
'ի գուբն առիւծուց: Իբրև այնպէս կարգէր. սպասէին Դանի-
էլի մինչդեռ կայր յաղօթս, և չարախօսէին. կուտէին 'ի վե-
րայ թագաւորին, և ստիպէին զնա արկանել 'ի գուբ, և արկ.
և կանխեաց եկն եգիտ զնա կենդանի, եՀան զնա 'ի գբոյն.
և զչարախօսսն կանամբք Հանդերձ մատնեաց 'ի սատակումն
առիւծուցն. և Հրաման երկնչել յԱստուծոյ:*

*Թ. Տեսանէ զտեսիլ գազանացն. առիւծովն՝ զթագաւորութիւնն
Բաբելացւոց. արջովն՝ զՄարաց և զՊարսից. ընձուն՝ զՄակե-
դովնացւոցն. և չորրորդիւն՝ զՀռոմայեցւոցն: Մարգարէանայ
վասն Քրիստոսի, և վասն Նեռինն, և Անտիոքու ամպարշտի.
զի նա է եղջեւրն փոքրիկ որ ընկէց զերիսն՝ որ յառաջ քան
զնա էին:*

*Ժ. Մարգարէանայ թէ զիարդ Աղէքսանդրոս Մակեդոնացի քակ-
եաց զթագաւորութիւնն Պարսից. խոյ՝ զթագաւորն Պարսից ա-
սէ. և քօշ՝ զԱղէքսանդրոս Մակեդոնացի: Աստ կայ եւթանասուն
եւթներորդքն:*

*ԺԱ. Իսկ վերջին տեսիլն՝ ուր զՀարաւային տիկնոջն ասէ՝ 'ի Մա-
կաբայեցւոց գիրսն գտանի. յորում և վասն Նեռինն և կատա-
րածի:*

*ԺԲ. ԶԲէլ կործանէ, զվիշապն սպանանէ, և 'ի գուբն արկանի և
ապրէ. և որք պատճառք արկանելոյն նորա եղեն՝ արկան 'ի
գուբն և ծախեցան յառիւծուցն:*

## ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԴԱՆԻԷԼԻ
### Դանիէլ Դատաստանաց

Ա 13 *Եւ էր այր մի բնակեալ 'ի Բաբելոնի, և անուն նո-
րա Յովակիմ: 2 Եւ ա՛ռ իւր կին՝ անուն Շուշան, դուստր
Քեղկեայ, գեղեցիկ յոյժ՝ երկիւղած 'ի Տեառնէ: 3 Եւ ծնօղք
նորա արդարք, և ուսուցին զդուստրն իւրեանց ըստ օ-
րինացն Մովսիսի: 4 Եւ էր Յովակիմ մեծատո՛ւն յոյժ. և է՛ր
նորա բուրաստան՝ մերձ յապարանս իւր. և առ նա՛ ժո-
ղովէին Հրէայք, զի փառաւորագո՛յն էր քան զամենեսեան:
5 Եւ երևեցան երկու ծերք 'ի ժողովրդենէ անտի դատաւորք
տարւոյն այնմիկ. զորոց խօսեցաւ Տէր՝ եթէ ել անօրէնու-
թիւն 'ի Բաբելոնէ 'ի ծերոցն դատաւորաց. որ Համարէին
առաջնորդել ժողովրդեանն: 6 Եւ նոքա Հանապազորդէին 'ի
տանն Յովակիմայ. և գային առ նոսա ամենեքեան 'ի դա-
տաստան: 7 Եւ լինէր իբրև ժողովուրդն մեկնէր զՀասարակ
աւուրբք՝ մտանէ՛ր Շուշան, և զգնայր 'ի բուրաստանի առն
իւրոյ: 8 Եւ տեսանէին զնա երկոքին ծերքն Հանապազ՝ զի
մտանէր և զգնա՛յր. և ցանկացան նմա: 9 Եւ դարձուցին
զմիտս իւրեանց, և խոտորեցուցին զաչս իւրեանց չՀայել
յերկինս՝ և չյիշել զարդար դատաստանսն: 10 Եւ էին երկոք-
եան Հարեալ 'ի նմա. և չպատմէին միմեանց զցաւս իւր-
եանց, 11 զի պատկառէին պատմել զցանկութիւնն իւրեանց.
քանզի կամէին լինե՛լ ընդ նմա: 12 Եւ սպասէին նմա ստէպ
Հանապազ տեսանել զնա: Եւ ասեն ցմիմեանս. 13 Երթիցո՛ւք
'ի տուն, զի ճաշոյ ժա՛մ է: Ելին մեկնեցան 'ի միմեանց.
14 և դարձեալ անդրէն եկին միւսանգամ առ միմեանս, և
Հարցեալ միմեանց զպատճառսն, խոստովա՛ն եղեն զցան-
կութիւնն իւրեանց. ապա եղեն ժամադիր միմեանց՝ թէ երբ
կարասցեն զնա միայն գտանել: 15 Եւ եղև 'ի սպասելն նոցա
նմա 'ի դիպող աւուր. եկն եմուտ երբեմն որպէս յերէկն և
յեռանդն, երկու միայն աղջկամբք, և ցանկացաւ լուանալ
'ի բուրաստանի անդ. քանզի տօ՛թ էր, 16 և չէր ոք անդ.
բայց միայն երկու ծերքն թաքուցեալք՝ որ սպասէի՛ն նմա:
17 Եւ ասէ ցաղջկունսն. Երթա՛յք բերէ՛ք ինձ ե՛ւղ և աճառ, և
զդուրս բուրաստանիս փակեցէ՛ք՝ զի լուացայց: 18 Եւ արա-
րին որպէս ասաց նոցա. փակեցին զդուրս բուրաստանին,
և ելին 'ի կողմանէ դրանցն բերել զոր ինչ Հրամայեաց
նոցա. և չտեսին զծերսն՝ քանզի թաքուցեալ էին: 19 Եւ ե-
ղև իբրև ելին աղջկունքն, յարեա՛ն երկու ծերքն, և դիմե-
ցին 'ի վերայ նորա և ասեն. 20 ԱՀա դուրք բուրաստանիս
փակեալ են, և չի՛ք ոք որ տեսանէ զմեզ, և մեք ցանկացեալ
եմք քեզ. վասն որոյ և քո Հաւանեալ մեզ՝ լե՛ր ընդ մեզ:
21 Ապա թէ ոչ՝ վկայե՛մք զքէն, թէ ոմն պատանի՛ էր ընդ
քեզ, և վասն այնորիկ արձակեցեր զաղջկունսն 'ի քէն:
22 Յոգո՛ց եՀան Շուշան և ասէ. Տագնա՛պ է ինձ յամեն-
այն կողմանց. եթէ զայդ գործեցից՝ մա՛Հ է ինձ, և եթէ
ո՛չ գործեցից՝ չե՛մ ապրելոց 'ի ձեռաց ձերոց: 23 Բայց լա՛ւ
է ինձ չգործել զայդ՝ և անկանել 'ի ձեռս ձեր, քան թէ
մեղա՛յց առաջի Տեառն: 24 Եւ աղաղակեաց 'ի ձայն մեծ
Շուշան. աղաղակեցին և երկոքին ծերքն կի՛ց նմին: 25 Եւ
ընթացաւ մին եբաց զդուրս բուրաստանին: 26 Իբրև լուան
զձայն ճչոյն 'ի բուրաստանի անդ ընտանիքն՝ անկան ընդ
կողմն դրանն 'ի ներքս, տեսանել թէ զի՞նչ իրք ընդ նմա
անցեալ իցեն: 27 Եւ իբրև ասացին ծերքն զբանս իւրեանց՝
զամօթի Հարան ծնօղքն յոյժ. զի ո՛չ երբէք այնպիսի բանք
ասացան զՇուշանայ: Եւ եղև 'ի վաղիւ անդր 28 իբրև եկն
ժողովուրդն առ այրն նորա Յովակիմ. եկին և երկու ծերքն
անօրէն մտօք զՇուշանայ՝ սպանանել զնա: 29 Եւ ասեն ա-
ռաջի ժողովրդեանն. Յղեցէ՛ք զՇուշանայ զդստերէ Քեղ-
կեայ, որ է կին Յովակիմայ: Եւ նոքա յղեցին. 30 և եկն նա՝
և ծնօղք իւր՝ և որդիք իւր՝ և ամենայն ազգականք նո-
րա: 31 Եւ Շուշան՝ էր փափո՛ւկ յոյժ և գեղեցիկ տեսլեամբ:
32 Եւ անօրէնքն Հրամայեցին Հոլանի՛ առնել զնա՝ քանզի
սքօղեալ էր, զի լցցին գեղով նորա: 33 Եւ իւրքն լային. և
ամենեքին որ ճանաչէին զնա: 34 Յարեա՛ն երկոքին ծերքն
'ի միջոյ ժողովրդեանն՝ և եդին զձեռս իւրեանց 'ի վե-
րայ գլխոյ նորա: 35 Եւ նա լալով Հայեցա՛ւ յերկինս. քանզի
էր սիրտ նորա յուսացեալ 'ի Տէր: 36 Ասեն ծերքն երկոք-
եան. Մինչդեռ մեք միա՛յն զգնայաք 'ի մէջ բուրաստանին,
եմուտ դա անդր երկու աղջկամբք, և փակեաց զդուրս
բուրաստանին, և արձակեաց զաղջկունսն: 37 Եկն առ նա
պատանի մի որ էր թաքուցեալ, և անկա՛ւ ընդ դմա: 38 Եւ
մեք էաք յանկեան բուրաստանին. իբրև տեսաք զանօրէ-
նութիւնն՝ ընթացա՛ք առ դոսա, և տեսաք զլինելն դոցա
ընդ միմեանս: 39 Զնա ո՛չ կարացաք ունել, քանզի բո՛ւռն էր
քան զմեզ, և եբաց զդուրսն և փախեաւ արտաքս: 40 Զդա
զոր ըմբռնեցաքդ՝ Հարցաք թէ ո՞վ էր պատանին, և ո՛չ կա-
մեցաւ պատմել մեզ. զայդ վկայե՛մք: 41 Եւ Հաւատա՛ց նո-
ցա ատեանն իբրև ծերոց ժողովրդեան՝ և դատաւորաց.
և դատեցան զնա մեռանել: 42 Աղաղակեա՛ց 'ի ձայն բարձր
Շուշան՝ և ասէ. Աստուած յաւիտենական ծածկագէտ, որ
գիտես զամենայն յառաջ քան զլինել նոցա. 43 դո՛ւ գիտես
զի սո՛ւտ վկայեն զինէն. և աՀա մեռանի՛մ որ ոչ ինչ գոր-
ծեցի՝ զոր դոքա՛յդ անօրինեն զինէն: 44 Եւ լուաւ Տէր ձայ-
նի նորա. 45 և մինչդեռ տանէին զնա կորուսանել, զարթոյց
Աստուած զՀոգին Սուրբ 'ի վերայ մանկան միոյ տղայոյ ո-
րում անուն էր Դանիէլ: 46 Եւ աղաղակեաց 'ի ձայն բարձր՝
և ասէ. Անպա՛րտ եմ ես յարենէ դորա: 47 Եւ դարձաւ ա-
մենայն ժողովուրդն առ նա՝ և ասեն. Զի՞նչ է բանդ այդ
զոր դուդ խօսեցար: 48 Եւ նա եկաց 'ի մէջ նոցա և ա-
սէ. Այդպէս անմի՞տք էք որդիք Իսրայէլի. ո՛չ քննեցէք, և
ո՛չ յիրաւանց վերայ Հասէք, և դատապարտեցէ՛ք զդուստրդ
Իսրայէլի: 49 Դարձա՛յք անդրէն յատեան. քանզի սո՛ւտ վկա-
յեցին դոքա զնմանէ: 50 Եւ դարձաւ ժողովուրդն վաղվա-
ղակի: Եւ ասեն ցնա ծերքն. Եկ նի՛ստ 'ի միջի մերում՝ և
պատմեա՛ մեզ. զի քե՛զ ետ Աստուած զերիցութիւն: 51 Եւ*

---

*Երեմիա մարգարէ:*

'Ի Բազումս պակասի. *Մարգարէութիւն Դանիէլի.* Ն — ունին միայն երկրորդ վերնագիրը. *Դանիէլ Դատաստանաց:* 13.2 Ոմանք. *Եւ երկիւղած 'ի Տեառնէ:* 3 Ոմանք. *Եւ ուսուցանէին զդուս":* 5 Ոմանք. *Դատաւորք տարւոյն այնորիկ... և Համարէին առաջ":* Ո—ք Ն—ս ոմանք. *Որ արՀամարէին առաջնորդել:* 6 Ոսկան. *'Ի տունն Յովակիմայ:* 7 Ոմանք. *Առն իւրում:* 9 Ոմանք. *Եւ դարձուցին զսիրտս իւրեանց:* 11 Ոմանք. *Զցանկութիւնս իւրեանց:* 13 Ոմանք. *Քանզի ճաշոյ ժամ է. և ելին մեկնէ":* Ո—ք Ոսկան. *Ճաշու ժամ է:* 14 Ոմանք. *Եւ Հարցեալ 'ի միմեանց զպատ"... զցանկութիւնս իւրեանց, ապա ժամադիր եղեն միմե":* 15 Ոմանք. *Երկուք միայն աղջ":* 16 Ոմանք. *Եւ ոչ ոք էր անդ:* 17 Յօրինակին. *Եւ ասէ զաղջկունսն:* Ոմանք. *Եւղ և աւճառ:*

18 Ոմանք. *Որպէս և ասաց նոցա... և ելին ընդ կողմանէ դր"... և ոչ տեսին զծերսն:* 20 Օրինակ մի. *Եւ քո Հաւանեալ յանձն առ և լե՛ր ընդ մեզ:* 22 Բազումք. *Յոգւոց եՀան:* Ոմանք. *Եթէ զայդ գործ գործեցից:* 23 Ոմանք. *Բայց լաւ լիցի ինձ:* 24 Ոմանք. *Եւ երկու ծերքն կից:* 26 Օրինակ մի. *'Ի մէջ բուրաստանի:* Բազումք. *Ընդ նա անցեալ իցեն:* 27 Ոմանք յաւելուն. *Զամօթի Հարան ծառայքն և ծնողքն յոյժ:* 28 Ոմանք. *Եկին և երկոքին ծերքն անօրէնք մտօք:* 34 Ոմանք. *Ծերքն երկոքեան 'ի միջոյ ժողովրդենէն, եդին:* 36 Ոմանք. *Միայն զնայաք 'ի մէջ... դա անդ:* 37 Ոմանք. *Եւ եկն առ դա պատանի ոմն որ թաքուցեալ էր:* 40 Ոմանք. *Եւ չկամեցաւ պատ":* 43 Ոմանք. *Եւ դու գիտես:* 45 Ոմանք. *Տանէին զնա 'ի կորուսանել:* 47 Ոմանք. *Եւ ամենայն ժողովուրդն դարձան առ:* 48 Ոմանք. *Եւ կաց 'ի միջի՝ և ասէ:* 49 Ոմանք. *Դարձիք յատեանն, զի սուտ վկայեցին զնմանէ:*

